Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.—Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

(Նյութեր զրույցների համար)

*Սովետական Միության աշխատավորները Կանանց Միջազգային օրը՝ Մարտի 8-ը այս տարի դիմավորում են մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում ունեցած հաջողություններից բխող համաժողովրդական ոգևորության պայմաններում։*

*Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը հետպատերազմյան հնգամյա պլանը հաջողությամբ կենսագործելուց հետո, նոր նվաճումներ ձեռք բերեց 1951 թվականին, առաջընթաց քայլ կատարելով կոմունիզմի կառուցման ճանապարհին։*

*Սովետական Միության աշխատավորների հետ միասին, արտասահմանի պրոգրեսիվ մարդկությունը Կանանց Միջազգային օրը նշում է ամբողջ աշխարհում խաղաղության ու դեմոկրատիայի ուժերի աճման, այդ ուժերի սերտ համախմբման պայմաններում։*

*Սովետական Միության կողմից դիմավոր-*

վող խաղաղության համար մղվող պայքարում, գնալով ավելի ու ավելի նշանակալից է դառնում կանանց դերը։ Տղամարդկանց հետ միասին կանայք ակտիվորեն աշխատում են համաշխարհային նոր պատերազմի վտանգը վերացնելու, մարդկությանը փրկելու Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստների կողմից տենդորեն նախապատրաստվող համաշխարհային նոր ըսպանդից ու աղետներից։

Սովետական կանայք պայքարելով բոլշևիկների պարտիայի և Սովետական Կառավարության խաղաղասիրական քաղաքականության հաղթանակի համար, կենսագործելով խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի ցուցումները, ամրապնդում են ինտերնացիոնալ կապերը ժողովրդական դեմոկրատիայի ու կապիտալիստական երկրների կանանց հետ, համախմբում ու ոգեշընչում են նրանց իրենց կենսական շահերի համար մղվող պայքարում։

Սովետական կնոջ քաջարի գործունեությունը ոգևորում է ամբողջ աշխարհի պրոգրեսիվ կանանց, հավատ ներշնչում նրանց՝ իրենց ուժերի և խաղաղության գործի հաղթանակի նկատմամբ։



***

Մեր մեծ Հայրենիքում կնոջ լիակատար ազատագրությունը և իրավահավասարությունը հանդիսանում է Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի մեծագույն նվաճումներից մեկը։

Մեր պարտիայի առաջնորդներ Լենինը և Ստալինը բազմաթիվ առիթներով ընդգծել են այն իրողությունը, որ սոցիալիստական հասարակության կառուցումը հնարավոր չէ առանց մեր երկրում մեծ ուժ կազմող կանանց ամենաակտիվ մասնակցության։ Լենինը նշում էր, որ «Սովետական իշխանության սկսած գործը կարող է առաջ մղվել միայն այն ժամանակ, երբ ամբողջ Ռուսաստանում հարյուրավոր կանանց փոխարեն այդ գործին կմասնակցեն միլիոնավոր ու միլիոնավոր կանայք։ Այն ժամանակ սոցիալիստական շինարարությունը Ռուսաստանում կլինի այնպես հաստատուն, որ ոչ մի տեսակի արտաքին թշնամիներ մյուս երկրներում և Ռուսաստանի ներսում սարսափելի չեն լինի Սովետական Ռեսպուբլիկայի համար»։

Բոլշևիկների պարտիայի իմաստուն քաղաքականության շնորհիվ տարեցտարի ա-

վելի նշանակալից է դառնում կնոջ դերը մեր
երկրի կյանքում։ Եթե 1922 թվականին Սո-
վետների առաջին համագումարում ընտըր-
ված Կենտգործկոմի անդամների մեջ կար 5
կին, ապա ՍՍՌՄ Գերագույն Սովետի առա-
ջին գումարման կազմի մեջ կար 187, երկ-
րորդ գումարման կազմի մեջ՝ 277 և երրորդ
գումարման կազմի մեջ կան 280 կին դեպու-
տատներ։ Բացի այդ, մի քանի հազար առա-
ջավոր կանայք ընտրվել են միութենական և
ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սո-
վետների դեպուտատներ։ Ավելի քան կես
միլիոն կանայք տեղական Սովետների դե-
պուտատներ են։

Միլիոնավոր սովետական կանայք հայրե-
նասիրական բարձր խանդավառությամբ աշ-
խատում են սոցիալիստական արդյունաբե-
րության ձեռնարկություններում, տրանս-
պորտում, նորակառույցներում։ Նրանք ան-
ընդհատ հարստացնում են իրենց գիտելիք-
ները, կատարելագործում իրենց արտադրա-
կան վարպետությունը, հանդես են գալիս
սոցիալիստական արդյունաբերությունը ա-
ռաջ մղող նոր գյուտերով, հայտնագործու-
թյուններով, արժեքավոր նախաձեռնություն-
ներով։ Ամբողջ երկրին հայտնի են կին նո-
րարարներ «Փարիզյան Կոմունա»-ի անվան



կոշիկի ֆաբրիկայի բրիգադիր Կորաբելնիկո-
վայի, Ստալինյան մրցանակի լաուրեատ
ստախանովական Վալենտինա Ցոմինայի, ե-
թիապատիր ստախանովականներ Անտոնինա
Ժանդարովայի, Օլգա Ագաֆոնովայի, կոմե-
րիտուհի Մարիա Մալիշևայի անունները,
որոնց աշխատանքի մեթոդները լայն կիրա-
ռում են գտել ՍՍՌՄ-ի և ժողովրդական
դեմոկրատիայի երկրների արտադրական
ձեռնարկություններում։ Սոցիալիստական
արդյունաբերության մեջ 400 հազար կա-
նայք աշխատում են որպես ինժեներներ ու
տեխնիկներ։ ՍՍՌՄ-ում բարձրագույն կրթու-
թյուն ստացած մասնագետների մեջ կա-
նայք կազմում են կեսից ավելին։

Դեռևս հարվածային կոլտնտեսականների
համամիութենական առաջին համագումա-
րում ընկեր Ստալինը նշեց, որ «Կանայք կոլ-
տնտեսություններում մեծ ուժ են։ ...Մեր
պարտականությունն է կոլտնտեսություննե-
րում առաջ քաշել կանանց և գործի դնել այդ
ուժը»։ Ընկեր Ստալինի ցուցումների հիման
վրա կինը սոցիալիստական գյուղատնտեսու-
թյան մեջ վճռական դեր է խաղում։ Միլիո-
նավոր կանայք իրական պայքար են ծավա-
լել գյուղատնտեսության հետագա վերելքի
համար։

Սոցիալիստական գյուղատնտեսության մեջ կատարած անձնուրաց աշխատանքի համար ավելի քան երկու հազար կանանց շնորհված է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում։

Սովետական Միության աշխատավորներին հայտնի են սոցիալիստական գյուղատնտեսության այնպիսի կին առաջավորների անուններ, ինչպիսիք են Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի Հերոս Բ. Բաղիրովան, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Զ. Վիխրևան, Ի. Սելեզնյովան և ուրիշներ։ Տասնյակ հազարավոր կոլտնտեսուհիներ աշխատում են որպես կոլտնտեսությունների նախագահներ, բրիգադիրներ, օղակավարներ և մասնագետներ։

Մեծ է սովետական կնոջ դերը գիտության, տեխնիկայի և արվեստի զարգացման բնագավառներում։ 1951 թվականի տվյալներով Սովետական Միությունում կան 60 հազար կին գիտական աշխատողներ։ Բազմաթիվ գրողներ, բանաստեղծներ, նկարիչներ, քանդակագործներ ստեղծել են գաղափարապես բարձր, սովետական ժողովրդին ոգեշնչող, նրա աշխատանքն ու պայքարը դրսևորող գեղարվեստական գործեր։ Գիտության, գյուտարարության, գրականության



ու արվեստի ասպարեզում աչքի ընկնող աշխատությունների համար 579 կանանց շնորհված է Ստալինյան մրցանակներ։

Ժողովրդական կրթության և առողջապահության ասպարեզում սովետական կինը անգնահատելի ծառայություններ է մատուցում։ 1951 թվականի տվյալներով 945 հազար ուսուցչուհիներ զբաղված են մեր մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության վեհ ու շնորհակալ գործով։ Ավելի քան մեկ միլիոն կանայք աշխատում են առողջապահության ցանցում։

Ինչպես կոմունիզմի կառուցման խաղաղ, ստեղծարար աշխատանքում, այնպես էլ սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության դիրքերում, սովետական կինը անթառամ փառքով է պսակել իրեն։ Ժողովուրդների հիշողության մեջ ընդմիշտ կմնան Զոյա Կոսմոդեմյանսկայայի, Լիզա Չայկինայի ու նման տասնյակ հերոսուհիների անուններ։ Մեր հիասքանչ երկրի անկախության պահպանման գործում ցուցաբերած արիության ու անձնազոհության համար 70 կանանց շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում, ավելի քան 600 հազար կանայք պարգևատրվել են ՍՍՌ Միության շքանշաններով ու մեդալներով։

Բոլշևիկների պարտիան, Սովետական կառավարությունը, մշտական հոգատարությամբ են շրջապատում Սովետական կնոջ նկատմամբ։ Սովետական Միության աճող սերնդի դաստիարակության ասպարեզում անխոնջ կերպով աշխատող ավելի քան 33 հազար կանանց շնորհվել է «Հերոսուհի մայր» պատվավոր կոչում։ «Մայրական փառք» շքանշաններով և «Մայրության մեդալ» մեդալներով պարգևատրված են ավելի քան 3 միլիոն կանայք։ Ամեն տարի մի քանի միլիոն ռուբլի նպաստ է տրվում բազմազավակ ու միայնակ մայրերին։ Մեր երկիրը գնալով ցանցապատվում է ծննդատներով, մանկամսուրներով, մանկապարտեզներով, պիոներական ճամբարներով։

Սովետական Միության բազմազգ կանանց շարքերում սովետահայ կինը ևս անձնվիրաբար պայքարում է կոմունիզմի կառուցման, Սոցիալիստական Հայրենիքի հզորության է՛լ ավելի ամրապնդման, ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության համար։

Ռեսպուբլիկայի կառավարման օրգաններում, տղամարդուն հավասար իրավունքով հանդես է գալիս հայ կինը։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների թվում



կան 90 կանայք, տեղական Սովետներում դեպուտատներ են ընտրված 4.193 կանայք, հարյուրավոր կանայք գյուղսովետների և կոլտնտեսությունների նախագահներ են։ Տասնյակ կանայք միանձնյա ղեկավարներ են գործարաններում, ֆաբրիկաներում և այլուր։

Սովետական Հայաստանի բանվոր-ծառայողների ընդհանուր թվի 40 տոկոսից ավելին կազմում են կանայք։ Հարյուրավոր կանայք արտադրության նորարարներ են։ Երևանի № 3 կոշիկի ֆաբրիկայի ստախանովական բանվորուհի Մարիա Թումանյանը մեր ռեսպուբլիկայում առաջինը արձագանքեց հումքի խնայողության համար Միության մեջ ծավալված շարժմանը։ Լենինականի Տեքստիլ կոմբինատի մանող բանվորուհի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Նվդոկիա Լիխաչևայի օրինակով քաղաքում արագորեն ծավալվեց արտադրության մեջ ետ մնացող բանվորներին առաջավորներին հասցնելու հայրենասիրական շարժումը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորներից ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվածների 60 տոկոսը կազմում են կանայք։ Զանասեր աշխատանքով ռեսպուբլիկայում մեծ հռչակ

են ձեռք բերել Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ախուրյանի շրջանի ճակնդեղագործական օղակի օղակավարուհի Հեղուշ Նազարեթյանը, Արտաշատի շրջանի Անաստասավան գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Միսե Կարապետյանը և ուրիշներ։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից առաջ, գրագետ կանանց թիվը շատ չնչին տոկոս էր կազմում։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանը ծածկվեց կուլտուրական հիմնարկների լայն ցանցով, հայ կինը հաղորդակից եղավ սովետական սոցիալիստական առաջավոր կուլտուրային, դարձավ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ակտիվ ստեղծող։

Այսօր մեր ռեսպուբլիկայի ավելի քան 700 կանայք աշխատում են Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի գիտահետազոտական ինստիտուտներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում։

***

Հետևելով սովետական կանանց քաջարի օրինակին, ժողովրդական դեմոկրատիայի երկրների կանայք ակտիվորեն մասնակցում



են նոր կյանքի կառուցմանը։ Չինաստանի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Հունգարիայի, Բուլղարիայի, Ալբանիայի, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, ինչպես նաև Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կանայք կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ գնալով ակտիվացնում են իրենց աշխատանքը ժողովրդական տնտեսության, կուլտուրական շինարարության ասպարեզներում, ձեռք են բերում նորանոր նվաճումներ։ Նրանք տղամարդկանց հետ համահավասար աշխատում են ժողովրդական դեմոկրատիայի կարգերի ամրապնդման, իրենց երկրների էկոնոմիկայի ու կուլտուրայի բարգավաճման, աշխատավորության կենսամակարդակի բարձրացման համար։ Նոր կյանք կառուցող երկրների կանայք սովետական կանանց հետ կողք-կողքի պայքարում են ժողովուրդների միջև փոխադարձ կապերի ընդլայնման, ամբողջ աշխարհում երկարատև ու կայուն խաղաղություն պահպանելու համար։

Հերոսական կորեական ժողովուրդը, չինական կամավորների հետ միասին ազատագրական մեծ պատերազմ է մղում իր երկիրը ներխուժած անգլո-ամերիկյան իմպե-

րիալիստների դեմ։ Այդ պայքարին ակտիվորեն մասնակցում են Կորեայի հերոս կանայք։ Հազարավոր կորեացի կին հերոսներ մարտնչում են ռազմաճակատում իրենց հայրենիքի պատվի, ազատության ու երջանկության համար։

Ամբողջ աշխարհով մեկ հնչում է Վյետնամի, Բիրմայի, Հնդկաստանի, Մալայայի, Իրանի, Եգիպտոսի, Թունիսի կանանց ցասումնալից ձայնը։ Նրանք չթուլացնելով ազգային-ազատագրական պայքարը, ձգտում են իրենց երկրներից դուրս վռնդելու ամերիկյան, անգլիական, ֆրանսիական իմպերիալիստներին։

Կապիտալիստական աշխարհի կանայք Մարտի 8-ը դիմավորում են հասունացող նոր տնտեսական ճգնաժամի, աճող գործազրկության ու աղքատության պայմաններում։ Ռազմական ծախսերի ուռճացումը, լայն սպառման ապրանքների գների անընդհատ աճը, հարկերի և բնակարանային վարձի բարձրացումը, այս ամենը անասելի թշվառություններ ու զրկանքներ են ստեղծում կապիտալիստական աշխարհի կնոջ համար։

Կապիտալիզմի օրոք աշխատավոր կանայք,— ասում է ընկեր Ստալինը,— բոլոր ճնշվածներից ամենաճնշվածներն են։



ԱՄՆ-ի իմպերիալիստները, որոնք իրենց երկիրը դարձրել են համաշխարհային նոր պատերազմի օջախ, ամենաիրավազուրկ վիճակում են պահում կանանց։ ԱՄՆ-ը կնոջ թշվառության ու իրավազրկության ցայտուն օրինակ է։ Իմպերիալիստների ու նրանց սպասարկուների կողմից գովաբանված «քաղաքակիրթ» Ամերիկայում միլիոնավոր կանայք զրկված են ընտրական իրավունքից։ Այդտեղ տղամարդու հետ հավասար աշխատանք կատարող կնոջը վճարվում է 30—40 տոկոս պակաս աշխատավարձ։ Անասելի շահագործման ու ճնշման են ենթարկվում առանձնապես նեգր և մեքսիկացի կանայք։ Թշվառ ու իրավազուրկ են նաև կապիտալիստական մյուս երկրների կանայք։

Գնալով հզորանում է խաղաղասեր կանանց միջազգային շարժումը, որի ավանգարդում քայլում են սովետական կանայք։ Ներկայումս 64 երկրների 135 միլիոն կանայք միավորվել են կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի մեջ։

«Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած իր զրույցում ընկեր Ստալինը մատնանշեց, որ «խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության

պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ»:

*Ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության ուսուցչի ու բարեկամի այս խոսքերը դարձել են խաղաղության մարտիկների պայքարի դրոշը: Գնալով ավելի բարձր է հնչում միլիոնավոր կանանց ձայնը խաղաղության միջազգային շարժման մեջ: Ամբողջ աշխարհի խաղաղասեր կանայք պահանջում են սպառազինությունների կրճատում, ատոմային զենքի արգելում, հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտի կնքում:*

*Խաղաղության կողմնակիցների համաշխարհային 2-րդ կոնգրեսի կորեական դելեգատուհի Պակ Դեն Այի ելույթը հնչեց որպես մեղադրական ակտ ամերիկյան իմպերիալիստների հասցեին, որոնք բարբարոսաբար ոչնչացնում են կորեական քաղաքներն ու գյուղերը, հողին են հավասարեցնում կորեական ժողովրդի պատմական հուշարձանները:*

*«Ձեռքերդ հեռու Կորեայից» մարտական կոչը ավելի բարձր է հնչում Բիրմայում ու Մալայայում, Եգիպտոսում ու Հնդկաստանում, Անգլիայում ու Ֆրանսիայում և աշխարհի շատ այլ երկրներում:*



*Ամերիկյան կինը իր բողոքի ձայնն է բարձրացրել ագրեսիվ իմպերիալիստական պատերազմի դեմ: Աշխարհի խաղաղասեր մայրերը երբեք իրենց որդիներին թնդանոթի միս չեն դարձնի ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ պլանների իրականացման համար: Այսօր ավելի քան երբեք աշխարհի կանայք համախմբված են ու լի են վճռականությամբ մինչև վերջ պայքարելու խաղաղության վեհ գործի հաղթանակի համար:*

*Խաղաղության համար պայքարող կանայք հերոսության ու արիության բազմաթիվ օրինակներ են ցուցաբերում: Պատանի ֆրանսուհի Ռայմոնդա Դյենի անունը, որը իրեն երկաթուղային ռելսերի վրա նետեց տանկերով բեռնված գնացքները կանգնեցնելու համար, այսօր ամբողջ աշխարհի խաղաղասեր կանանց պայքարի վեհ խորհրդանիշ է դարձել:*

*Այս տարի խաղաղասեր կանանց միջազգային շարժման պատմության մեջ ընդմիշտ գրվեցին անգլուհի, հասարակական գործիչ Մոնիկա Ֆելտոնի և գերմանական գրող Աննա Զեգերսի անունները: Բարձր գնահատելով նրանց պայքարը հանուն խաղաղության, Մոնիկա Ֆելտոնին և Աննա Զեգեր-*

*սին շնորհված են «Ժողովուրդների միջև խաղաղությունն ամրապնդելու համար» Միջազգային Ստալինյան մրցանակներ։*

*Կանանց միջազգային շարժումը իմպերիալիզմի լագերում առաջացնում է սարսափ և ատելություն։ Ամերիկյան իմպերիալիստների և նրանց սպասարկուների բոլոր մեքենայությունները՝ կանգնեցնելու խաղաղասեր կանանց հզոր շարժումը, ապարդյուն է անցնում։ Ոչ մի ուժ չի կարող կանգնեցնել խաղաղության պահպանության մեր ժամանակի հզորագույն շարժումը։*

***

*Մարտի 8-ը կանանց բերկրալից օրերից է։ Այդ օրը կոմունիզմի կառուցմանը ակտիվորեն մասնակցող սովետական կանայք կրկին ու կրկին անգամ ցուցադրելով իրենց համախմբվածությունը բոլշևիկների պարտիայի շուրջը, իրենց անհուն սերը՝ ժողովուրդների հանճարեղ առաջնորդ, աշխարհի կանանց լավագույն բարեկամ ընկեր Ստալինի նկատմամբ, նոր ավյունով կշարունակեն պայքարել սոցիալիստական Հայրենիքի է՛լ ավելի հզորության և խաղաղության ամրապնդման համար։*



# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՈՒՌՆ ՎԵՐԵԼՔԸ

*Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի շնորհիվ, սոցիալիստական էկոնոմիկան և կուլտուրան հզոր, աննախընթաց վերելք են ապրում։*

*Վեց տարի առաջ՝ 1946 թվականի փետրվարի 9-ին, ընկեր Ստալինը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում նշեց մեր երկրում կոմունիզմի կառուցման հանճարեղ ծրագիրը։*

*Ոգեշնչված կոմունիզմի կառուցման Ստալինյան հոյակապ պլանով, սովետական ժողովուրդը փթթուն հաջողությունների հասավ անցած վեց տարիների ընթացքում։ Հետպատերազմյան հնգամյակի հիմնական խնդիրը հաջողությամբ կատարվեց։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի փթթուն ուժն իր վառ արտահայտությունը գտավ ժողովրդական տնտեսության զարգաց-*

ման 1951 թվականի պլանի կատարման ար-
դյունքների մեջ։
Բոլշևիկների պարտիայի, Սովետական
կառավարության և ընկեր Ստալինի ամենօր-
յա հոգատարության շնորհիվ, բուռն կերպով
աճեց ու զարգացավ ազգային ռեսպուբլի-
կաների ժողովրդական տնտեսությունը, ձևով
ազգային, բովանդակությամբ սոցիալիստա-
կան կուլտուրան։
Աննախընթաց վերելք է ապրում նաև մեր
ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսու-
թյունը։ Անցած վեց տարիները հանդիսացան
մեր ռեսպուբլիկայի արտադրողական ուժե-
րի բուռն զարգացման տարիներ։ Ժողովրդա-
կան տնտեսության վերականգնման ու զար-
գացման 1946—1950 թվականների հնգամ-
յա պլանը հաջողությամբ իրագործվեց։ Արագ
տեմպերով զարգացավ գունավոր մետալուր-
գիան և մեքենաշինական արդյունաբերու-
թյունը. ստեղծվեցին արդյունաբերության
մի շարք նոր ճյուղեր, կառուցվեցին տասն-
յակ արդյունաբերական խոշոր ձեռնարկու-
թյուններ։
Հայաստանի աշխատավորները օրինական
հպարտությամբ ընդունեցին Հայկական ՍՍՌ
Վիճակագրական Վարչության Հաղորդագրու-
թյունը՝ Հայկական ՍՍՌ ժողովրդական



տնտեսության զարգացման 1951 թվականի
պետական պլանի կատարման արդյունքնե-
րի մասին։ Այդ հաղորդագրության տվյալ-
ները պերճախոս են։ Նրանք ցույց են տալիս
անցած տնտեսական տարում մեր ռեսպուբ-
լիկայի աշխատավորների խաղաղ, ստեղծա-
րար աշխատանքի փայլուն արդյունքները։
Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող
արդյունաբերության համախառն արտա-
դրանքի թողարկման 1951 թվականի պլանը
կատարվել է 104 տոկոսով։ Ռեսպուբլիկա-
յի տերիտորիայում գտնվող ամբողջ ար-
դյունաբերության համախառն արտադրանքը
1951 թվականին, 1950 թվականի համեմա-
տությամբ աճել է 18 տոկոսով։
Ռեսպուբլիկայի սննդի և թեթև արդյու-
նաբերության, մսեղենի ու կաթնեղենի ար-
դյունաբերության, տեղական արդյունաբե-
րության, «Հայձուկ» տրեստի, Հայկական
ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ
արդյունաբերության և հրատարակչություն-
ների գործերի վարչության, Հայկական ՍՍՌ
Մինիստրների Սովետին կից Բամբակագոր-
ծության Գլխավոր Վարչության և այլ մի-
նիստրությունների ու գերատեսչությունների
բազմաթիվ առաջավոր ձեռնարկություններ
ոչ միայն կատարել են պետական առաջա-

դրանքները, այլև պլանից դուրս բարձրորակ արտադրանք են տվել Հայրենիքին։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հզոր վերելքը արդյունք է այն բանի, որ բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի ժողովրդական տնտեսությունն անընդհատ հագեցվում է առաջավոր հայրենական տեխնիկայով։ Հսկայական չափերով ծավալվում է արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատատար պրոցեսների մեքենայացումը, յուրացվում են մեքենաների և մեխանիզմների նոր, կատարելագործված տեսակներ, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության տեխնիկական անշեղ առաջընթացը։

Անցյալ տարի զգալի հաջողություններ ձեռք բերեցին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։

Գյուղատնտեսության վերելքը մեր երկրում իրականացվում է առաջավոր ագրոգիտության և նորագույն տեխնիկայի բազայի վրա։ Դեռևս 1939 թվականին ընկեր Ստալինը նշեց, որ մեր հողագործությունը հանդիսանում է ոչ միայն ամենախոշոր և մեքենայացված, առավել ապրանքային հողագործությունը, այլև ժամանակակից տեխ-



նիկայով ամենից ավելի հագեցված հողագործությունն աշխարհում։

Ներկայումս ՍՍՌՄ-ի գյուղատնտեսության արտադրա-տեխնիկական բազան անհամեմատ ավելի է ամրապնդվել ու հզորացել։ Միայն անցյալ տարվա ընթացքում սոցիալիստական գյուղատնտեսությունը ստացավ 137 հազար տրակտոր փոխադրած 15 ուժանոցի, 53 հազար հացահատիկային կոմբայն, 59 հազար բեռնատար ավտոմեքենա, 2 միլիոն գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։ Այս ամենը թույլ տվին բարձրացնելու Սովետական Միության, այդ թվում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության մեքենայացման մակարդակը։ Ռեսպուբլիկայի տրակտորային պարկի կարողությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 28 տոկոսով. ՄՏ կայանները 1951 թվականին տրակտորային աշխատանքների պլանը կատարել են 32 տոկոսով ավելի, քան 1950 թվականը։

1951 թվականին Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը դաշտերից հավաքեց գյուղատնտեսական կուլտուրաների առատ բերք։ Զգալի չափով աճեց հանրային հոտի գլխաքանակը, բարձրացավ նրա մթե-

րատվությունը։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները, հայրենասիրական վեհ զգացմունքով տոգորված, ժամկետից շուտ կատարեցին հարազատ պետության հանդեպ ունեցած իրենց պարտավորությունները։

1952 թվականի բերքի համար աշնանացան կուլտուրաներ ցանվել են 11 տոկոսով ավելի, իսկ ցորեն՝ 14 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։ 1951 թվականին ոռոգման նոր սիստեմի է փոխադրվել ոռոգվող ամբողջ վարելահողի 31 տոկոսը։

Նշանակալից են հաջողությունները կոլտնտեսությունների և գյուղատնտեսական աշխատանքների էլեկտրիֆիկացման գործում։ 1951 թվականի վերջին արդեն էլեկտրիֆիկացվել էր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 74 տոկոսը։

Ժողովրդական տնտեսության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները պայմանավորեցին ռեսպուբլիկայի աշխատավորության նյութական բարեկեցության մակարդակի հետագա վերելքը։ Ժողովրդի նյութական բարեկեցության նկատմամբ պարտիայի և Կառավարության ցուցաբերած ջերմ հոգատարության շնորհիվ 1951 թվականի մարտի 1-ից չորրորդ անգամ իջեցվեցին պետական մանրածախ ապրանքների գները։



Բարձրացավ աշխատավորության գնողունակությունը, ավելացավ ազգաբնակչությանը վաճառվող ապրանքների քանակը։

Խաղաղ շինարարության ասպարեզում Սովետական Միության ձեռք բերած նշանակալից հաջողությունները, երկրի էկոնոմիկայի, կուլտուրայի և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա վերելքը նորից ու նորից ամբողջ աշխարհին ցույց տվին սոցիալիստական կարգերի առավելությունները կապիտալիստականի հանդեպ։ Այժմ, երբ կապիտալիստական երկրներում տեղի է ունենում սպառազինությունների կատաղի մրցավազք և այդ պատճառով գնալով ավելի ու ավելի է իջնում աշխատավորների կենսամակարդակը, աճում է մասսաների գործազրկությունն ու աղքատությունը, Սովետական Միությունում էկոնոմիկան ի սպաս է դրված խաղաղ շինարարության նպատակներին։ Սովետական մարդկանց նյութական բարեկեցության նկատմամբ ցուցաբերված ստալինյան հոգատարությունը ոգեշնչում է մեզ աշխատանքային նորանոր սխրագործությունների, հանուն մեր մեծ Հայրենիքի՝ խաղաղության անխորտակելի պատվարի հզորության հետագա է՛լ ավելի ամրապնդման։

Ս. ՓԱԽՅԱՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Մեր երկրում հաղթանակած տնտեսության սոցիալիստական սիստեմը անսահման հնարավորություններ է տվել աշխատավորության ստեղծագործական ընդունակությունների հայտաբերման և զարգացման համար: Այն իրողությունը, որ մեզ մոտ մարդիկ աշխատում են ո՛չ թե շահագործողների, այլ իրենց համար, առաջ է բերել աշխատանքի նկատմամբ նոր, սոցիալիստական վերաբերմունք:*

*Աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքը, որ որոշակիորեն դրսևորվեց 1919 թվականին կոմունիստական շաբաթօրյակներում, գնալով ընդգրկեց միլիոնավոր մասսաների, վերածվեց սոցիալիստական մրցության՝ մեր ժամանակի ամենակենսունակ ու անհաղթահարելի շարժման:*

*Սոցիալիստական մրցությունը, ինչպես բնորոշել է Ի. Վ. Ստալինը, «...Միլիոնավոր աշխատավոր մասսաների առավելագույն*



ակտիվության *վրա հիմնված՝* սոցիալիզմի շինարարության կոմունիստական մեթոդն» *է:*

*Մասսաների ստեղծագործական նախաձեռնության հիման վրա ծայր առած սոցիալիստական մրցությունը առանձին ուժ ու ծավալ ստացավ ստալինյան հնգամյակների տարիներին: Բոլշևիկների պարտիայի առաջին իսկ կոչով սոցիալիստական մրցության մեջ ընդգրկվեց ամբողջ երկիրը, ծնունդ առավ հարվածայնությունը՝ առաջին հնգամյակի առաջավորների շարժումը:*

*Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ սոցիալիստական մրցությունը գնալով ավելի ծավալվեց և հանգեց իր բարձրագույն ձևին՝ ստախանովյան շարժմանը:*

*Հայրենական պատերազմի տարիներին սոցիալիստական մրցությունը դրսևորվեց նոր ուժով: Այն արտահայտվեց ռազմաճակատը անհրաժեշտ ամեն բանով ապահովելու համար աշխատանքի բազմաթիվ նոր ձևերի ու մեթոդների կիրառման մեջ:*

*Հայրենական Մեծ պատերազմը հաղթականորեն ավարտելուց հետո մեր երկիրը կրկին անցավ խաղաղ աշխատանքի:*

*Սովետական Միության աշխատավորները ծավալեցին աշխատանքի սոցիալիստական ձևերը, տասնյակ միութենական առաջավոր*

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Մեր երկրում հաղթանակած տնտեսության սոցիալիստական սիստեմը անսահման հնարավորություններ է տվել աշխատավորության ստեղծագործական ընդունակությունների հայտաբերման և զարգացման համար: Այն իրողությունը, որ մեզ մոտ մարդիկ աշխատում են ո՛չ թե շահագործողների, այլ իրենց համար, առաջ է բերել աշխատանքի նկատմամբ նոր, սոցիալիստական վերաբերմունք:*

*Աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքը, որ որոշակիորեն դրսևորվեց 1919 թվականին կոմունիստական շաբաթօրյակներում, գնալով ընդգրկեց միլիոնավոր մասսաների, վերածվեց սոցիալիստական մրցության՝ մեր ժամանակի ամենախոշոր ու անհաղթահարելի շարժման:*

*Սոցիալիստական մրցությունը, ինչպես բնորոշել է Ի. Վ. Ստալինը, «...Միլիոնավոր աշխատավոր մասսաների առավելագույն*



ակտիվության *վրա հիմնված՝ սոցիալիզմի* շինարարության կոմունիստական մեթոդն» *է:*

*Մասսաների ստեղծագործական նախաձեռնության հիման վրա ծայր առած սոցիալիստական մրցությունը առանձին ուժ ու ծավալ ստացավ ստալինյան հնգամյակների տարիներին: Բոլշևիկների պարտիայի առաջին իսկ կոչով սոցիալիստական մրցության մեջ ընդգրկվեց ամբողջ երկիրը, ծնունդ առավ հարվածայնությունը՝ առաջին հնգամյակի առաջավորների շարժումը:*

*Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ սոցիալիստական մրցությունը գնալով ավելի ծավալվեց և հանգեց իր բարձրագույն ձևին՝ ստախանովյան շարժմանը:*

*Հայրենական պատերազմի տարիներին սոցիալիստական մրցությունը դրսևորվեց նոր ուժով: Այն արտահայտվեց ռազմաճակատը անհրաժեշտ ամեն բանով ապահովելու համար աշխատանքի բազմաթիվ նոր ձևերի ու մեթոդների կիրառման մեջ:*

*Հայրենական Մեծ պատերազմը հաղթականորեն ավարտելուց հետո մեր երկիրը կրկին անցավ խաղաղ աշխատանքի:*

*Սովետական Միության աշխատավորները ծավալեցին աշխատանքի սոցիալիստական ձևերը, տասնյակ միութենական առաջավոր*

ձեռնարկություններ հանդես եկան Համամիութենական սոցիալիստական մրցության նախաձեռնողների դերում, հարյուրավոր բանվորներ ու կոլտնտեսականներ մտցրին բազմաթիվ նոր, արժեքավոր առաջարկություններ։ Մրցության բազմաթիվ ձևերի մասսայական կիրառման շնորհիվ, մեծ հաջողությամբ ավարտվեց հետպատերազմյան հնգամյա պլանը։ Բարձր ցուցանիշներով փակվեց նաև անցած տնտեսական տարին։
Աշխատանքի կոմունիստական մեթոդի առավելությունները մեր երկրի տնտեսական, քաղաքական կյանքում գործնական արդյունքներ ունեցան շնորհիվ այն բանի, որ բոլշևիկների պարտիան աշխատավորության շրջանում ծավալեց ագիտացիոն-մասսայական աշխատանք, որի կազմակերպիչներ հանդիսացան պարտիական կազմակերպությունների մերձավորագույն օգնականները՝ ագիտատորները։

Այժմ, երբ մեր երկրում հերոսական աշխատանք է կատարվում կոմունիստական շինարարությունն արագացնելու համար, առանձնակի նշանակություն է ստանում սոցիալիստական մրցության ծավալման նպատակով մասսաների մեջ տարվող դաստիա-



րակչական աշխատանքների կազմակերպումը։
Սոցիալիստական մրցության մեջ աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարը եղել է ու մնում է քաղաքական-մասսայական աշխատանքի գլխավոր նպատակը։
«Մեծ նախաձեռնություն» աշխատության մեջ Վ. Ի. Լենինը գրում է, որ «Աշխատանքի արտադրողականությունը, դա, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակակարգի հաղթանակի համար...»։
Վ. Ի. Լենինի այս դրույթը զարգացնելով, ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությունում ընկեր Ստալինը ասաց. «...Սոցիալիզմը կարող է հաղթել միայն աշխատանքի ավելի բարձր արտադրողականության բազայի վրա, ավելի բարձր, քան կապիտալիզմի պայմաններում, պրոդուկտների և սպառման ամեն տեսակ առարկաների առատության բազայի վրա, հասարակության բոլոր անդամների ունևոր և կուլտուրական կյանքի բազայի վրա»։
Ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ բոլոր աշխատողներին ընդգրկել կոլեկտիվ և անհատական սոցիալիստական մրցության

մեջ, օգնել նրանց կնքելու սոցիալիստական մրցության պայմանագրեր։

Ագիտատորները մրցության պայմանագրերի կնքման ժամանակ պետք է ձգտեն վերացնելու առանձին տեղերում գոյություն ունեցող այն սխալ պրակտիկան, երբ հաճախ բանվորներն ու կոլտնտեսականները վերցնում են պարտավորություններ, բայց չեն մրցում միմյանց հետ։ Փորձը ցույց է տվել, որ այդ կերպ կազմակերպված մրցությունը չի տալիս սպասած արդյունքը, հնարավոր չի լինում ագիտացիայի ժամերին կատարել աշխատանքի արդյունքների կենդանի համեմատություն, ծավալել փոխադարձ քննադատություն, կազմակերպել փորձի փոխանակում, որի պատճառով մրցությունը դառնում է գրասենյակային գործ։

Ընկեր Ստալինը մատնանշում է, որ «Սոցիալիստական մրցությունը գրասենյակային գործ չէ։ Սոցիալիստական մրցությունը մասսաների գործարար ռևոլուցիոն ինքնաքննադատության արտահայտությունն է, որը հենվում է միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության վրա»։

Սոցիալիստական մրցության պայմանագրերի հաջող կնքումից հետո ագիտատորին մնում է հիմնականը՝ մրցության կազմա-



կերպումը։ Նրա խնդիրն է՝ բարձրացնել յուրաքանչյուր մրցողի գիտակցությունն ու նախաձեռնությունը և օգնել ստանձնած պարտավորությունը անթերի կատարելու համար։

Մրցության հաջողությունը մեծապես կախված է այն բանից, թե ինչպես է ագիտատորը մրցության ընթացքի ստուգման արդյունքները հաջորդաբար հրապարակում ու քննարկում պարապմունքների ժամերին։ Ամեն օր ագիտատորը պետք է իր մոտ գրանցի մրցության արդյունքները, պարապմունքների ժամանակ հրապարակի դրանք, կատարի համեմատություններ, բորբոքի հետաքրքրությունը, մրցության մեջ առաջավոր լինելու ձգտումը։

Մրցության ընթացքը անհրաժեշտ է հրապարակել ու քննարկել նաև պատի թերթերում, ժողովներում, խորհրդակցություններում։ Խրախուսելի է, երբ հաճախ ձեռնարկություններում ագիտատորները այդ նպատակով հրատարակում են «Կայծակ» թերթիկներ։

Սոցիալիստական մրցությունն ամենուրեք առաջ է քաշում արտադրության առաջավորներ։ Ագիտատորների խնդիրն է առաջինը տեսնել, հայտաբերել ձեռնարկությունում, կոլտնտեսությունում նորը, առաջադիմա-

կանը, կազմակերպել նրա շուրջը հասարակական լայն կարծիք, մասսայականացնել առաջավորների փորձը, հետևել աշխատանքի նոր մեթոդների արմատավորմանը։

Ինչպես հայտնի է, աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր երկրում խրախուսվում է նյութապես։ Որքան արտադրողաբար է աշխատում մրցության մասնակիցը, նա այնքան ավելի շատ է ստանում։ Դրանում է արտահայտվում նաև մեր պետության և աշխատավորների շահերի միասնությունը։

Սակայն մեր երկրում աշխատանքը պետության հանդեպ միայն պարտականություն կամ գոյության աղբյուր չէ, այն աշխատավորության համար նաև պատվի, փառքի և արիության գործ է։ Այս տեսակետից էլ նյութական խրախուսման հետ մեկտեղ հսկայական նշանակություն ունի մրցության մասնակիցների հասարակական խրախուսումը, որը բարձրացնում է նրանց քաղաքական ակտիվությունը, ամրապնդում է նրանց մոտ այն գիտակցությունը, որ նրանք կոչված են իրենց աշխատանքով մասնակցելու մեր երկրի առջև դրված հոյակապ խնդիրների իրագործմանը։

Սովետական Միությունում սոցիալիստա-



կան մրցության առաջավորները ըստ արժանավույն գնահատվում են, արժանանալով Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, պարգևատրվում են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով, նրանց անունները հրապարակվում են մամուլում և այլն։ Այս բոլորը ագիտատորները պետք է օգտագործեն մրցությունն է՛լ ավելի բորբոքելու, ագիտացիոն աշխատանքը գործնական հետևանքների հասցնելու համար։

Սոցիալիստական մրցության հարցերը լուսաբանելիս, ագիտատորները միշտ պետք է ելակետ ունենան բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության որոշումները, մեր պարտիայի առաջնորդների ցուցումները։ Այդ ցուցումների ու որոշումների լույսի տակ նրանք պետք է ամեն մի նախաձեռնություն ու նվաճում կապեն մեր երկրի առջև դրված ընդհանուր խնդիրների հետ։

Ագիտատորի խնդիրն է՝ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, պարտիական կազմակերպության ղեկավարությամբ գլխավորել աշխատավորների քաղաքական ակտիվությունը և այն ուղղել մեր երկրի տնտեսության է՛լ ավելի հզորացման, խաղաղության պահպանման ընդհանուր նպատակներին։

# ՕՐԻՆԱԿԵԼԻ ԱԳԻՏԱՏՈՐԸ

*Քանի տարի է ինչ Պետրոս Կարապետյանը ագիտացիոն աշխատանք է տանում Նոր Բայազետի շրջանի Նորատուս գյուղի Մոլոտովի անվան կոլտնտեսությունում: Տարունակ զբաղվելով ինքնակրթությամբ, կատարելագործելով ագիտացիոն աշխատանքի իր վարպետությունը, Պ. Կարապետյանը կուտակել է քաղաքական-մասսայական աշխատանքի հարուստ փորձ: Լինելով կոլտնտեսային արտադրության առաջավոր, քաղաքական-մասսայական աշխատանքում աճած կոմունիստ, նրա զրույցները հավասար հետաքրքրությամբ լսում են բոլորը՝ դաշտավարությամբ զբաղվողն ու անասնապահը, բրիգադիրն ու օղակավարը, մեխանիզատորն ու գյուղատնտեսը:*

*Ագիտացիոն աշխատանքում Պ. Կարապետյանի ունեցած լուրջ հաջողությունները արդյունք են այն բանի, որ նրա մոտ բարձր է պատասխանատվության զգացմունքն իր ստանձնած շնորհակալ գործի նկատմամբ:*



*Նա հմտորեն ընտրում է պարապմունքների թեմաները, խնամքով նախապատրաստում և բովանդակալից ու հետաքրքիր է անցկացնում զրույցները:*

*Հաջորդ պարապմունքի նախապատրաստումը ագիտատորը սկսում է այսպես. ամեն անգամ ագիտացիոն ժամի վերջին նա դիմում է ունկնդիրներին, թե ինչի մասին նրանք ցանկանում են լսել մյուս պարապմունքին: Հաշվի առնելով ունկնդիրների ցանկությունները, նրանց հետաքրքրող հուզող հարցերը, Պ. Կարապետյանը մինչև հաջորդ պարապմունքը բարեխղճորեն նախապատրաստվում է: Հետևում է թերթերին, առանձնացնում այնպիսի հոդվածներ, ինֆորմացիաներ, որոնք վերաբերում են նախընտրած թեմային. նա քաղվածներ է ընտրում մեր պարտիայի ղեկավար ընկերների աշխատություններից, անհրաժեշտության դեպքում դիմում գեղարվեստական, պատմական գրականությանը:*

*Շատ հաճախ կոմունիստ ագիտատորը հաջորդ պարապմունքի նյութը քննարկման է դնում ագիտկոլեկտիվի նիստին, պարզաբանում այնտեղ իր պլանը, հրապարակում հավաքած նյութերը և խոսում պարապմունքի մեթոդի մասին: Հաշվի առնելով ագիտկոլեկ-*

տիվի նիստում եղած դիտողությունները, նա վերափոխում է նախապատրաստած պարապմունքի պլանը, լրացնում նոր նյութերով և ապա ներկայանում պարապմունքի։

Որպես կանոն, պարապմունքի սկզբում Պ. Կարապետյանը ունկնդիրներին ծանոթացնում է անցյալ պարապմունքից հետո մեր երկրում և միջազգային կյանքում տեղի ունեցած նշանակալից դեպքերը։ Եթե այդ ժամանակաշրջանում պարտիական ու սովետական օրգանները ընդունել են որոշումներ, կամ պարտիայի ու կառավարության ղեկավարները այս կամ այն առիթով ունեցել են ղեկուցումներ, ապա այդ որոշումների ու զեկուցումների մասսայականացմանը ագիտատորը նվիրում է առանձին պարապմունք։

Ընդհանուր բնույթ կրող հարցերի մեջ ագիտատորը առաջին հերթին հանգամանորեն կանգ է առնում մեր երկրում կատարվող աշխատանքային վերելքի հարցերի վրա։ Նա ունկնդիրներին ծանոթացնում է, թե ինչ նոր նախաձեռնություններ կան երկրում, ինչպես և ինչ ցուցանիշներ են ձեռք բերել առաջավոր ձեռնարկությունները։ Արդյունաբերության հարցերը լուսաբանելու հետ միասին Պ. Կարապետյանը կանգ է առնում սոցիալիստական գյուղատնտեսության, աշխատավորության բարեկեցության աճի, կուլտուրայի և արվեստի զարգացման հարցերի վրա։



Մեր երկրի ներքին կյանքին, կամ միջազգային իրադարձություններին նվիրված բոլոր զրույցների վերջում ագիտատորը չի մոռանում կանգ առնել Նորատուսի կոլտնտեսության աշխատանքների վրա, պարզաբանելով ունկնդիրների առաջիկա անելիքները։

Շատ հաճախ Պ. Կարապետյանը զրույցներ է կազմակերպում կոլտնտեսության ներքին խնդիրների շուրջը։ Այդ դեպքում նա վերցնում է մեկ հարց։ Վերջերս նրա զրույցներից մեկը նվիրված էր «Անկորուստ անցկացնենք անասունների ծնի կամպանիան» թեմային։ Նախօրոք ագիտատորը ուսումնասիրեց, թե ինչպես է ընթանում ծինը, վերցրեց բոլոր տվյալները, մանրամասնորեն ուսումնասիրեց կոլտնտեսությունում եղած պայմանները, խոսեց առաջավոր անասնապահների հետ և նոր միայն ներկայացավ պարապմունքի։ Ունկնդիրներին ծանոթացնելով ծնի կամպանիայի ընդհանուր հարցերի հետ, նա նշեց, որ ծնի կամպանիայի հաջող անցկացումը անասնաբուծության զարգացման ամենապատասխանատու խնդիրներից մեկն է։ Նա փաստերով ցույց տվեց, որ այդ

կամպանիայի անկորուստ անցկացումից է կախված անասունների գլխաքանակը ավելացնելու, հոտը բարելավելու, մթերատվությունը բարձրացնելու համար տարվող աշխատանքների հաջողությունը: Պարապմունքի վերջում ագիտատոր ընկ. Պ. Կարապետյանը անհրաժեշտ համարեց, որ ունկնդիրները արտահայտվեն: Ելույթ ունեցողները քննարկեցին կոլտնտեսությունում անասունների ծինը հաջող կազմակերպելու հարցը, բացահայտեցին նոր թերություններ, նշեցին միջոցառումներ այդ թերությունները վերացնելու համար:

Զրույցներից բացի, Պ. Կարապետյանը հաճախ բարձրաձայն ընթերցանություն է կազմակերպում: Հետևելով թերթերին ու ամսագրերին, նա մինչև հաջորդ պարապմունքը ընտրում է ամենակարևոր ու հրատապ հարցերին վերաբերող հոդվածներ, ինֆորմացիաներ ու հաղորդագրություններ և դրանք ընթերցում ունկնդիրների համար: Շատ հաճախ նա միևնույն թեմայի վերաբերյալ մի քանի նյութեր առանձնացնելով, պատմում է նրանց բովանդակությունը, անհրաժեշտության դեպքում ընթերցում առանձին պարբերություններ ու մտքեր:

Բացի զրույցից և բարձրաձայն ընթերցա-



նությունից, Պ. Կարապետյանը մեծ նշանակություն է տալիս նաև ցուցադրական ագիտացիային: Շատ հաճախ նրա զրույցները տեղի են ունենում քարտեզի շուրջը, օգտագործում է դիագրամաներ, գրաֆիկներ:

Նորատուս գյուղի Մոլոտովի անվան կոլտնտեսությունում աշխատում են 41 ագիտատորներ: Պարտիական կազմակերպության ղեկավարությամբ նրանք քաղաքական-մասսայական սիստեմատիկ աշխատանք են ծավալում կոլտնտեսականների շրջանում, մոբիլիզացնում նրանց ուժերը կոլտնտեսության առջև դրված խնդիրները անթերի կատարելու համար: Ագիտատոր ընկ. Կարապետյանի օրինակով իրենց պարտականությունը ջանասիրությամբ են կատարում նաև ագիտատորներ Ս. Պողոսյանը, Վ. Օհանյանը, Ս. Բարսեղյանը և ուրիշներ:

Կոլտնտեսականների շրջանում ծավալված քաղաքական-մասսայական աշխատանքի շնորհիվ կոլտնտեսությունը անցած տնտեսական տարին փակեց բարձր ցուցանիշներով: Ծխախոտի հումքի հանձնման պլանը կատարվեց 214 տոկոսով, որի դիմաց կոլտնտեսությունը պետությունից ստացավ մեկ միլիոն 166 հազար ռուբլի, 1950 թվականի 570 հազար ռուբլու փոխարեն:

Շարունակելով իրենց շնորհակալ գործը, Նորատուսի ագիտատորներն այս տարի հասել են ավելի մեծ հաջողությունների։ Անցյալ տարվա համեմատությամբ կոլտնտեսությունն այս տարի բազմակողմանիորեն է նախապատրաստվել գարնանացանին։ Առանձնապես աշխատանքը կազմակերպված է ընթանում անասնապահական ֆերմաներում, որտեղ ագիտացիա է ծավալում Պ. Կարապետյանը։ Կոլտնտեսության անասնապահները մինչև հիմա հորթերի կորուստ չեն ունեցել, անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն բարձրացել է անասունների կաթնատվությունը։

Նորատուսի ագիտատորները պարտիական կազմակերպության ղեկավարությամբ գլխավորում են կոլտնտեսականների պայքարը՝ 1952 թվականը կայուն և բարձր բերքի, անասնապահական մթերքների և գլխաքանակի աճման տարի դարձնելու համար։

Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ

---



# ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԱՍԱՄԲԼԵԱՅԻ ՎԵՑԵՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Փարիզում իր աշխատանքն ավարտեց Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի հերթական վեցերորդ սեսիան։

Ամբողջ երեք ամիս համաշխարհային հասարակական կարծիքի ուշադրությունը բևեռված էր սեսիայի աշխատանքների վրա, որովհետև աշխարհի հասարակ մարդիկ սպասում էին, որ սեսիան հաջողությամբ կլուծի ամբողջ աշխարհում խաղաղությունը պահպանելու, համաշխարհային նոր պատերազմի անգլո-ամերիկյան ագրեսիվ պլանները տապալելու համար մղվող պայքարի հետ կապված մի շարք լուրջ ու անհետաձգելի խնդիրներ։

Սեսիան գումարվել էր միջազգային լարված իրադրության պայմաններում։ Միավորված Ազգերի Կազմակերպության վերջին՝ հինգերորդ սեսիայից հետո անցած ժամանակաշրջանում ամերիկա-անգլիական իմպերիալիստները նոր պատերազմի հրահրման իրենց քաղաքականությամբ, ինչպես հայտնի է, էլ ավելի ուժեղացրին խաղաղության գործին սպառնացող վը-

տանքը, է՛լ ավելի խորացրին ու ծավալեցին ագրեսիան մի շարք երկրներում, մասնավորապես՝ Կորեայում, ուժեղացրին ճնշումը գաղութային երկրներում՝ Վյետնամում, Ֆիլիպիններում, Ինդոնեզիայում։ Նրանք հարձակման նոր ալիք բարձրացրին Արևելքի երկրների՝ Իրանի, Եգիպտոսի, արաբական երկրների ժողովուրդների իրավունքների դեմ, ցանկանալով այդ երկրներում ամրապնդել իրենց խախտված դիրքերը, է՛լ ավելի ստրկացնել ու կեղեքել այդ ժողովուրդներին։

ՄԱԿ-ի վեցերորդ սեսիային նախորդած ժամանակաշրջանը ամերիկյան իմպերիալիզմի կողմից մարշալականացված երկրների հետագա ստրկացման ժամանակաշրջան էր, իմպերիալիզմի լագերում հակասությունների հետագա սրման ժամանակաշրջան։

Համաշխարհային նոր պատերազմի հրահրման քաղաքականությունը, որ մոլեռանդորեն կիրառում են ամերիկա-անգլիական իմպերիալիստները, հասցրեց կապիտալիստական աշխարհի երկրների աշխատավոր լայն մասսաների դրության է՛լ ավելի վատթարացմանը, հասցրեց կապիտալի նոր հարձակմանը՝ աշխատավորների իրավունքների դեմ, հասցրեց աշխատավոր մասսաների դեմ կիրառվող անլուր տեռորի ու հալածանքների ուժեղացմանը։

Ամերիկա-անգլիական բլոկի իմպերիալիստների նրման քաղաքականությունը հզոր հակահարվածի հանդիպեց, ինչպես գաղութային ու կախյալ երկրների



ժողովուրդների, այնպես էլ ամբողջ աշխարհի աշխատավորների կողմից։ Ամերիկա-անգլիական իմպերիալիստների դեմ մղած պայքարում աշխարհի առաջավոր ուժերը մեծ հաջողություններ ձեռք բերին պատերազմի իմպերիալիստական հրձիգների դիտավորությունները վիժեցնելու և խաղաղությունը պաշտպանելու գործում։

Աշխարհի առաջավոր ուժերի համար ոգեշնչող օրինակ ծառայեցին և ծառայում են սովետական ժողովրդի պատմական հաջողությունները խաղաղ շինարարության ճակատում, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունները։ Դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը, որոնց գլխավորում է հզոր Սովետական Միությունը, մեծ հաջողություններ ձեռք բերին Միավորված Ազգերի Կազմակերպության հինգերորդ և վեցերորդ սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում։

Ամբողջ աշխարհի աշխատավորները իրավամբ պահանջում էին Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի վեցերորդ սեսիայից, որ նա ևս իր ավանդը մտցնի խաղաղության գործում, նոր պատերազմի իմպերիալիստական պլանների տապալման համար մղվող պայքարում, օգնի վերացնելու միջազգային դրության լարվածությունը և պատերազմի սպառնալիքը։

Ամբողջ աշխարհի աշխատավորների խոհերն ու հույսերը պարզ ու հստակ արտահայտեցին Ֆրանսիական

ժողովուրդը, Փարիզի աշխատավորները, որոնք սեսիայի օրերին թե նամակներով և թե բանավոր կերպով դիմում էին ՄԱԿ-ին, առաջին հերթին, Սովետական դելեգացիային և մյուս երկրների դելեգացիաներին, խնդրելով պաշտպանել խաղաղության գործը ամբողջ աշխարհում։

Սակայն Միավորված Ազգերի Կազմակերպության վեցերորդ սեսիան չարդարացրեց այն հույսերը և չկատարեց այն պահանջները, որ դրվել էին նրա առաջ։

Ամերիկա-անգլիական բլոկի դիվանագետները, ցանկանալով մոլորության մեջ գցել համաշխարհային հասարակական կարծիքը, այժմ աղաղակ են բարձրացնում վեցերորդ սեսիայի գոյություն չունեցող ինչ-որ հաջողությունների մասին, սքողում են իրականությունը, փորձում են բթացնել ժողովուրդների զգոնությունը և այդ կեղծ պրոպագանդայով վնաս հասցնել խաղաղության վեհ գործին։

Սեսիայի աշխատանքների ընթացքը պարզ ցույց տըվեց, որ սեսիան ցանկալի արդյունքների չհասավ, սեսիայի աշխատանքների հաջողությանը խանգարեց ՄԱԿ-ի ագրեսորական միջուկը, որը ծառայում է նոր պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգների պլանների իրականացմանը։

Սեսիայում կրկին դրսևորվեց միջազգային քաղաքականության մեջ եղած երկու գծերի պայքարը՝ խաղաղության գծի, որը ներկայացնում են սոցիալիզմի ու դեմոկրատիայի երկրները՝ Սովետական Միության



գլխավորությամբ և պատերազմի գծի, որը ներկայացնում է իմպերիալիստական բլոկը՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների գլխավորությամբ։

Սովետական դելեգացիան, հավատարիմ սովետական պետության խաղաղասիրական սկզբունքներին, այս սեսիայում, ինչպես և ՄԱԿ-ի բոլոր նախորդ սեսիաներում, արտահայտելով ամբողջ առաջավոր մարդկության խոհերն ու զգացմունքները, գործադրեց բոլոր ջանքերը՝ խաղաղությունը պատերազմի ամերիկյան հրձիգների ոտնձգություններից հետևողականորեն և համառությամբ պաշտպանելու համար։

Սեսիայի աշխատանքի կենտրոնում դրված էին Սովետական դելեգացիայի առաջարկները՝ «Համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքի դեմ ուղղված և ժողովուրդների միջև խաղաղությունն ու բարեկամությունն ամրապնդելու միջոցառումների մասին»։

Սովետական դելեգացիան՝ իր այս առաջարկների կապակցությամբ, մշակեց և սեսիայի քննությանը դրեց մի շարք կոնկրետ միջոցառումներ, որոնց ընդունումը խաղաղությունն ամրապնդելու հաստատուն երաշխիք կլիներ և ամուր բազա՝ միջազգային պրոբլեմների խաղաղ կարգավորման համար։ Այդ միջոցառումներն էին՝ անպայման արգելել ատոմային զենքը, միջազգային խիստ վերահսկողություն սահմանելով այդ արգելքի կենսագործման նկատմամբ. հինգ մեծ տերությունների սպառազինությունները և զինված ուժերը տարվա ընթացքում կրճատել մեկ

ճորորդով և խաղաղության Պակտ կնքել այդ տերությունների միջև, ինչպես նաև անհապաղ դադարեցնել պատերազմական գործողությունները Կորեայում և երեք ամսվա ընթացքում այնտեղից դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը:

Պարզ է, որ Սովետական դելեգացիայի այս առաջարկների ընդունումը արմատապես կբարելավեր միջազգային դրությունը:

Սակայն ամերիկա-անգլիական բլոկի դիվանագետները, հիմնվելով ՄԱԿ-ում իրենց ունեցած քվեարկության հլու-հնազանդ մեքենայի վրա, հասան այն բանին, որ Սովետական դելեգացիայի այդ կարևորագույն առաջարկները չընդունվեցին:

Թե ամերիկա-անգլիական իմպերիալիստները ինչպիսի սաբոտաժ կազմակերպեցին խաղաղության հարցերի քննարկման դեմ, կարելի է տեսնել կորեական հարցից: Մերժելով Կորեայում պատերազմական գործողությունները դադարեցնելու և այնտեղից բոլոր օտարերկրյա զորքերը դուրս բերելու վերաբերյալ Սովետական դելեգացիայի առաջարկը, ամերիկա-անգլիական դելեգացիաներն անցկացրին իրենց բանաձևը՝ կորեական հարցի քննությունը հետաձգելու մասին, որովհետև նրանք վախեցան այդ հարցի հրապարակային քննարկումից, իսկ նրանց այդ բանաձևը փաստորեն նպատակ ուներ՝ ընդարձակել ագրեսիան Կորեայում, ձգձգել խաղաղության բանակցությունները, քողարկել ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ



քաղաքականությունը Հեռավոր Արևելքում, ուժեղացնել խաղաղության գործին սպառնացող վտանգը:

Մերժելով Սովետական դելեգացիայի առաջարկը «Նոր պատերազմի սպառնալիքի դեմ ուղղված միջոցառումների մասին», ամերիկյան իմպերիալիստները, փորձելով մշուշապատել համաշխարհային հասարակական կարծիքը և խաղաղության պաշտպանության իսկական գործողությունները նենգափոխել մանվածապատ, վերացական բանաձևերով, անցկացնել տվին իրենց բանաձևը՝ «բոլոր զինված ուժերի և բոլոր սպառազինությունների կարգավորումը, սահմանափակումը և բալանսավորված կրճատումը» վերնագրով: Այս բանաձևի ընդունումը հետապնդում էր, ամենից առաջ, մի նպատակ՝ խանգարել Սովետական դելեգացիայի բանաձևի ընդունմանը: Խորամանկորեն ձևակերպված այդ բանաձևի նպատակն է՝ մանվածապատ ու անորոշ ձևակերպումների և փքուն ֆրազների տակ ատոմային զենքի արգելումը փոխարինել սպառազինությունների ցուցակագրության վերաբերյալ կեղծ առաջարկներով, անորոշ ժամանակով հետաձգել սպառազինությունների մրցավազքի կրճատման հետ կապված կոնկրետ և կարևոր հարցերի լուծումը:

Ամերիկա-անգլիական դիվանագետները ՄԱԿ-ի ցուցանակի հետագա օգտագործման և նրա դրոշի ներքո իրենց ագրեսիվ քաղաքականության անցկացնելու նպատակով՝ սեսիայում ստեղծեցին այսպես

կոչված կոլեկտիվ միջոցառումների կոմիտե։ Նրանք առաջարկ մտցրին ՄԱԿ-ում ստեղծել ռազմական գործադիր օրգան, որը կգտնվեր ամերիկացիների ձեռքում և որը կտնօրիներ ՄԱԿ-ի անդամ պետությունների բոլոր ռազմական ուժերը։ Իրենց այդ առաջարկով՝ ամերիկա-անգլիական դիվանագետները բացահայտորեն խախտեցին ՄԱԿ-ի կանոնադրությունը, որի համաձայն ՄԱԿ-ի զինված ուժերի կարգադրիչը պետք է լինի Անվտանգության խորհուրդը՝ ռազմա-շտաբային կոմիտեի միջոցով։ Սակայն Անվտանգության խորհրդում գոյություն ունեցող՝ տերությունների միաձայնության սկզբունքը՝ ինչպես հայտնի է, խանգարում է ամերիկա-անգլիական դիվանագետներին իրենց հայեցողությամբ օգտագործել ՄԱԿ-ի անդամ պետությունների զինված ուժերը, ահա թե ինչու, նրանք առաջ քաշեցին ՄԱԿ-ում մի զուգահեռ ռազմական օրգան ստեղծելու հարցը, որը կարողանար գործել Անվտանգության Խորհրդից անկախ։

Սակայն ամերիկա-անգլիական իմպերիալիստների այդ խաղը խայտառակ կերպով տապալվեց՝ դեմ առնելով ոչ միայն դեմոկրատական երկրների հակագործությանը, այլև նույնիսկ ԱՄՆ-ի շատ արբանյակ երկրների հակագործությանը, որոնց լուրջ անհանգստություն է պատճառում իրենց սուվերենությունից ու անկախությունից լրիվին զրկվելու հեռանկարը։

Ամերիկա-անգլիական դիվանագետներին, այնուամենայնիվ, հաջողվեց պահպանել կոլեկտիվ գործողու-



թյունների կոմիտեն՝ ՄԱԿ-ի ցուցանակի տակ իրենց ագրեսիվ քաղաքականությունը շարունակելու համար։

Սեսիայի աշխատանքում կարևոր տեղ էր գրավում մարդու իրավունքների հարցի քննարկումը։ Ամերիկա-անգլիական բլոկը, արտահայտելով գաղութատեր-իմպերիալիստական երկրների շահերը, առաջարկեց «Մարդու իրավունքների պաշտպանությունը» վերնագրով մի կեղծ բանաձև, որի նպատակն էր, ըստ էության, հեշտացնել գաղութային քաղաքականության կիրառումը։

Սովետական դելեգացիան վճռականորեն դեմ դուրս եկավ այդ բանաձևին, դրա առթիվ մտցնելով մի ուղղում, որը դիմակազերծ է անում ամերիկա-անգլիական իմպերիալիստների գաղութարարական դիտավորությունները։ Այդ ուղղումը, որ ընդունվեց ձայների մեծամասնությամբ, հայտարարում է, որ մարդու իրավունքների և անձնական ազատությունների պահպանումը պետք է իրականացվի ոչ թե ընդհանրապես «ամբողջ աշխարհում», այլ իրենց կոնկրետ տերիտորիաներում, այդ թվում՝ ոչ-ինքնավար և «խնամքի տակ գտնվող» տերիտորիաներում։

Չնայած այդ ուղղման դեմ ամերիկա-անգլիական բլոկի կատաղի դիմադրությանը, ընդունվեց նաև մյուս կարևոր ուղղումը՝ մարդու իրավունքների պակտում բոլոր ժողովուրդների և ազգերի ինքնորոշման իրավունքի վերաբերյալ հոդված մտցնելու մասին։

Խոսելով սեսիայի արդյունքների մասին, չի կարելի

չնշել այն, որ այս անգամ ամերիկա-անգլիական բլոկի շատ արբանյակներ հանդես եկան իրենց տերերի առաջարկների դեմ։ Այս փաստը վկայում է, որ գնալով էլ ավելի է ընդլայնվում օպոզիցիան ընդդեմ նոր պատերազմի հրձիգների։

Սակայն ամերիկա-անգլիական դիվանագետները գործադրեցին առավելագույն ջանքերը ՄԱԿ-ի ագրեսորական մեծամասնությունը իրենց հլու-հնազանդ պահելու համար։ Դրա հետևանքով մերժվեցին Սովետական Միության խաղաղասիրական առաջարկները և ընդունվեցին ամերիկա-անգլիական բլոկի մի շարք առաջարկություններ, որոնք ուղղված են ագրեսիայի հետագա խրախուսմանն ու ընդարձակմանը։

Ահա թե ինչու անդրադառնալով ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 6-րդ սեսիայի արդյունքներին, ընկ. Յա. Մալիկը նշեց, որ նա «ապարդյուն եղավ միջազգային խաղաղության և անվտանգության ամրապնդման տեսակետից»։

Ամերիկա-անգլիական դիվանագետների ոտնձգությունները, որոնք ապարդյուն դարձին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի աշխատանքները և ուժեղացրին արևմտա-եվրոպական իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականությունը, պատերազմի սպառնալիքը, առաջ են բերել ամբողջ աշխարհի աշխատավորների պայքարի նոր վերելք՝ հանուն իրենց իրավունքների, հանուն խաղաղության ամրապնդման՝ ամբողջ աշխարհում։

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Գ. ԿՈՆՅՈԽՈՎ.— ՌԿ(բ)Պ տասներեքերորդ կոնֆերենցիան: *92 էջ, գինը 1 ռ. 15 կոպ.։*

Ա. ՊԵՏՐՈՎ.— Բնական գիտությունների պրոպագանդան ակումբում: *72 էջ, գինը 2 ռ.։*

Օ. ՊԻՍԱՐԺԵՎՍԿԻ.— Մենդելեև: *387 էջ, գինը 9 ռ.։*

Լ. ԼԱԳԻՆ.— Պատենտ «Ա. Վ.»: *365 էջ, գինը 8 ռ.* 50 կոպ.:

ՀՄԱՅԱԿ ՍԻՐԱՍ.— Եղբայրություն: *181 էջ, գինը 7 ռ. 40 կոպ.։*

Ս. Ի. ՇՏԵՅՄԱՆ.— Ինչպես է տեղծված Կարավանոյի ռեկորդային նախիրը: *207 էջ, գինը 5 ռ. 20 կոպ.։*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

